## ՀԱՄԱՌՕՏ

# ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՍՈՒՐԲ ԳՐՈՑ



Ի ՊԷՏՍ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ԵՒ ԸՆՏԱՆԵԱՑ

*Թարգմանեց Անգղիերէնէ*

Բ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ





Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ

1896

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Բազմավաստակ աշխատութենէ եւ մեծամեծ զոհողութիւններէ վերջ կարող եղայ վերջապէս թարգմանել ՀԱՄԱՌՕՏ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ անուն այս մատենիկ՝ զոր կ'ուզեմ մաս առ մաս ի լոյս ընծայել, սա միակ խորհրդով թէ իւր պարզութեամբն ու համառօտութեամբ պիտի կարենայ կարեւոր պակաս մը լնուլ, ինչ ինչ օգուտներ ընծայելով գործածող մէն մի անհատին ։ Արդարեւ մեր մէջ նուազ թիւ մը չ'են կազմեր համանուն բայց այլասեռ գրեանք, որոց ամենքն ալ ունին իրենց կատարելիք ուրոյն դերն, եւ որոց կարգին կը միանայ սոյն թարգմանածոյ մատենիկս ։

Պատուարժան ուսանողք կարելի է երբեմն բաղխին սխալներու, սակայն ներողամտութեամբ անցնելնին կը խնդրեմ, զի չ'էի կրնար ասկէ աւելի կոկիկ ձեւ մը տալ անոր քանի որ սուղ է ժամանակս եւ անգին ժամերս ։ Այսու ամենայնիւ կը խոստանամ երկրորդ տպագրութեան մէջ (եթէ հարկ ըլլայ) փոփոխութիւններ ներմուծել թէ՛ ոճի եւ թէ՛ ձեւի մասին ։

Աշխարհագրութիւնս կը բաղկանայ չորս շրջաններէ՝ որոց առաջինը կը խօսի Պաղեստինու, անոր լերանց, դաշտերուն եւ հովիտներուն. գետերուն, լիճերուն, աւազաններուն եւ աղբիւրներուն վրայ. երկրորդը կը պարունակէ բաժանումներն, իսկ մնացեալ երկուքը կը

նկարագրեն Հին եւ Նոր Կտակարանաց մէջ յիշուած երկիրներն՝ պատմելով հանդերձ այլ եւ այլ տեղեր պատահած դէպքերը ։

Իմ մեծագոյն դժուարութիւնս եղած է Անգլիերէն անուանց Հայերէնը գտնելն, որոյ համար նուիրած աշխատանքս ապարդիւն եղած չ՚է յուսամ ։

Վստահելով որ իմ այս առաջին Թարգմանութիւնս պիտի կարենայ ըստ արժանեաց սիրալիր ընդունելութիւն գտնել հանրութեան առջեւ, ջերմապէս կ՚աղդարարեմ որ Սուրբ Գրոց մէն մի ընթերցող գէթ մէկ օրինակ առնէ ասկէ իբր օժանդակ Կենաց Մատենին ։ Մանաւանդ փափաքելի է որ իբրեւ դասագիրք մը գործածուի վարժարանաց մէջ ։

Գրքիս մէջ գործածուած «Ն. Ք.» տառերը պէտք է կարդալ «Նախ քան զՔրիստոս» . ինչպէս նաեւ «Յ. Ք.» տառերը՝ « Յամին Տեառն » կամ « Յետ Քրիստոսի» ։

« Այս գիրքն ալ քննեցէ՛ք» ։

Բ. ԱԲՐԱՀԱՄԵԱՆ



# ՀԱՄԱՌՕՏ
# ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ
# ՍՈՒՐԲ ԳՐՈՑ

## ՏՐՋԱՆ Ա.

## ՊԱՂԵՍՏԻՆ

### ՖԻԶԻՔԱԿԱՆ ԵՒ ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ

### Ա. — ԱՆՈՒԱՆՔ ԵՐԿՐԻՆ

Պաղեստինու գլխաւոր անուններն են.

1. **Քանան.** — Այսպէս կը կոչուի Քամի կրտսերագոյն որդւոյն՝ Քանանի անուամբ որ հոն հաստատուեցաւ Բաբելոնի խառնակութենէն վերջ. Ծնընդ. Ժ 15. ԺԲ 5.

2. **Ուխտի կամ Ուխտեալ Երկիր.** — Այս անուն տրուած է անոր այն ուխտին համար զոր

*Աստուած ըրաւ Աբրահամի, թէ իր սերունդը պիտի ժառանգէր զայն. Ծննդ. ԺԲ 7. ԺԵ 18։*

3. Եբրայեցւոց Երկիրը. — *Այս անուամբ կը կոչուի զայն ստացող ժողովուրդէն. Ծննդ. Ե 15։ Նոքա Եբրայեցի կը կոչուէին յեբերէ՝ Աբրահամի մէկ նախահօրմէն (Ծննդ. Ժ 24), կամ թերեւս Միջագետքէն երկրին մէջ հաստատուելու նպատակաւ Եփրատէ անցնելնուն համար։*

4. Իսրայէլի Երկիր. — *Սա ընծայուած է Յակոբայ սերնդեան բնակութենէն՝ որ Իսրայէլ եւս կը կոչուէր։*

5. Պաղեստին. — *Փղշտացիներէն առնուած անուն մը՝ որոնք Միջերկրական ծովուն մէկ սահմանագլխոյն վրայ բնակեցան երկրին հարաւային արեւմտեան կողմը։ Այս է առ հասարակ գործածական անունը. Եղ. ԺԵ 14։*

6. Սուրբ Երկիր. — *Այս անուն միայն մէկ անգամ յիշուած էր Սբ. Գրոց մէջ. բայց հիմա բազմիցս կրկնուած է այն երկրին հետ միացած նուիրական ընկերութեանց համար. Զաք. Բ 12։*

*Գործածուած են նաեւ* Եհովայի, Աստուծոյ *և* Յուդայի Երկիր *անուններն, սակայն սոնք հազուադէպ են։*

### *Բ. — ԴԻՐՔ, ՍԱՀՄԱՆ ԵՒ ՏԱՐԱԾՈՒԹԻՒՆ*

*Պաղեստին Միջերկրական ծովուն արեւելեան*

ծայրին վրայ հաստատուած երկրի անձուկ սահման մ'է և կը գրաւէ Սուրիոյ Թրքական նահանգին հարաւային արեւմտեան մասը ։

Բուն Պաղեստին, կամ, ի բնէ Հրէից ժառանգութիւն ճանչցուած երկիրը, իւր արեւելեան կողմը ունէր Յորդանան գետը, բայց երբ Իսրայէլացւոց ստուար բազմութիւն մը հաստատուեցաւ արեւելեան կողմը, յայնժամ երկիրը գրաւուելով նկատուեցաւ Ուխտեալ երկրին մէկ բաժինը՝ որ նոյն անունին տակ պարփակեցաւ ։

Պաղեստին ընդհանրապէս նկատուած է չորջապատեալ հիւսիսէն Լիբանան լեռներով և Փիւնիկէի սահմանագլխով. արեւմուտքէն՝ Միջերկրական ծովով. հարաւէն՝ Ապառաժ Արաբիայով, և արեւելքէն՝ Սուրիոյ և Արաբիոյ անապատներով(1) ։

Ունի 180 մղոն երկայնութիւն՝ իբր 65 մղոն միջին լայնութեամբ, և կը պարունակէ մակերեւոյթ մը՝ որ կը հաշուի 11,000 քառակուսի մղոն ։ Կը տարածուի 30° 40'էն 33° 30' հիւսիսային լայնութեան, և 34°էն 36° 20' արեւելեան երկայնութեան մէջ ։

---

(1) Դաւթի եւ Սողոմոնի ժամանակ Հրէից ազգերը տարածուեցան աւելի ընդարձակ մասի մը մէջ քան 'ի վերոյ նշանակեալ սահմաններն որոնք կը գրկեն Սիւրիոյ եւ Արաբիոյ մեծագոյն մասերն . ցեղերու բազումք կը կառավարուէին այն իշխաններով՝ որք կը բնակէին իրենց բուն երկրին մէջ եւ մշտնջենապէս միացած չէին Պաղեստինու ։

## Գ. — ԵՐԿՐԻՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԻՐՔԸ

Պաղեստին հաստատապէս նկատուած է իբրև բլուրներու և հովիտներու երկիր մը. Օր. ԺԱ 11. Իր ամբողջ երկայնութեան մէջ հիւսիսէն հարաւ տարածուող բլուրներու կրկնակ շղթաներ կան՝ որոնք ծագում կ'առնեն Լիբանան և Անդի-Լիբանան լեռներէն և զուգահեռական կ'ընթանան Յորդանանու հանդիպակաց կողմերուն վրայ մինչեւ որ կը հասնին Քորեբի և Սինայի բարձանց յԱպառաժ Արաբիա.

Բազմաթիւ կողմնակի գագաթներ կը բաժնուին այս շարքերէն. բայց ո՛չ միօրինակ ուղղութեամբ մը. Երկրին հիւսիսային մասին մէջ բլուրք ընդհանրապէս ծածկուած են դալարներով մինչ ի գագաթն, և բովանդակ երկրին դիրքը այլայլած է ու գեղեցիկ. Հարաւային ու հարաւարեւելեան կողմը, մանաւորապէս Մեռեալ ծովու մերձաւորութեամբ, լեռներու երեւոյթը աժգոյն և ամայի է. Քանանու լերանց շատերը կը բարձրանան նշանաւոր գագաթներու. Սոյն խորհրդածութեան միակ գերազանց օրինակն է Հերմոն լեռն Յորդանանու արեւելեան կողմը, որ ծովուն մակերեւոյթէն 11,000 ոտք վեր կը բարձրանայ.

Լեռներու մէջ սփռուած են բազում դաշտավայրեր և հովիտներ՝ յորոց ոմանք յորդառատ են

դալարներով և նոր դաշտանկարներով. մինչ այլք չոր են և անջրդի ։ Սոցա նշանաւոր օրինակներ են Եզրայէլի դաշտն ի Գալիլիա՝ որ ծածկուած է ամենաընտիր արտերով. Յորդանանու Հովիտն՝ որոյ օդը վատառողջ և հողը անբերրի է ։

Պաղեստինու մէջ գլխաւոր ջուրբաժանը կը հակի դէպ 'ի Միջերկրական ծովն, յորում շատ մը փոքրիկ առուակներ կը հոսին Ներքին բարձունքներէն ։ Երկրին անուանի գետն է Յորդանան՝ որ հիւսիսէն հարաւ կ'ընթանայ գրեթէ իր ամբողջ լայնութեան մէջ ։ Իւր ուղղութեան հիւսիսային մասին մէջ Յորդանան երկու փոքրիկ լիճեր կը կազմէ՝ իւրաքանչիւրը շրջապատեալ չքեղ տեսարաններով և արգաւաւոր հողով ։ Հարաւային կողմը կը գտնուի Մեռեալ ծովն ուր կը թափի ։ Այս լճին և շրջակայ երկրաց դիրքը զարմանալի հակապատկերն է այլոց դիրքին ։

Պաղեստինու ընդհանուր դիրքը կանխագոյն ժամանակաց մէջ աւելի հրապուրիչ եղած է քան որ այժմ է ։ Իւր նախկին երեւոյթի մասին եղած մէն մի նկարագրութիւն հաւատալ կ'ուտայ թէ նշանաւոր երկիր մ'էր այն թէ բնական գեղեցկութեան և թէ երկրագործութեան արդեանց մասին ։

## Դ. — ԼԵՐԻՆՔ

Պաղեստինու երկու լեռնաշղթայից գլխաւոր գագաթներն են. —

1. Լիբանան լերինք

### Յարեւմուտս Յորդանանու

2. Պէյթիթիւդ լեռ
3. Կարմեղոս լեռ
4. Թափոր լեռ
5. Կիլպօս լեռ
6. Եբաղ եւ Գարիզին լերինք
7. Զիթենեաց լեռ
8. Գորանթանայի լեռ

### Յարեւելս Յորդանանու

9. Հերմոն լեռ
10. Բասան լեռ
11. Գաղայոդ լեռ
12. Աբարիմ լերինք

1. Լիբան՝ (սպիտակ) պարփակելով Լիբանան եւ Անդի-Լիբանան կրկնակ շղթայներն, կը կազմէ լերան ահագին զօտույ մը մասն՝ որ կը յառաջանայ Սիւրիոյ ամբողջ երկայնութեան մէջ հիւսիսէն ի հարաւ եւ Պաղեստինու հիւսիսային սահմանն կը նկատուէր ։

Շղթային ամենէն բարձր մասն է Լիբանան՝ որոյ գագաթ ծածկուած է մշտնջենաւոր ձեամբ ։ Իւր կազմութեան ապառաժը կրային եւ ճերմակի մօտ գոյնով քար մ'է շատ մասերու մէջ առատ երկաթով՝ զոր կը գործածեն բնակիչք ։ Սողոմոնի

տաճարին շինութեան համար պէտք եղած քարն ուատաղձ այս լեռներէն բերուած են․ քանի մը հին եղեւնիի ծառեր կը գտնուին դեռ անոնց վրայ և կ'ըսուի թէ գոյութիւն ունէին մինչև այն վեհապետին օրերը․ Ա․ Մնաց․ Ե 13–18։ Լիբանան սրբազան գրողներու հանապազօրեայ քերթողական ակնարկութեան առարկայն եղած է․ Երգ․ Դ 8․ Ես․ Խ 16։

2․ Պէյթիթիւդ լեռը Գալիլեայի դաշտէն ելնող երկու գագաթներէ կը բաղկանայ։

Ասոնց միոյն վրայ ըստ աւանդութեան, Քրիստոս արտասանեց լեռան վրայ քարոզ անուամբ ծանօթ ճառ մը․ Մատթ․ Ե 1։ Նոքա այժմ Արաբացիներէն կը կոչուին Քուրն Հաթթին։

3․ Կարմեղոս վեց կամ ութ մղոն ի ներքս տարածուող բլուրներու գօտի մ'է․ Ակրոն (Acre) խորշէն դէպ հարաւային արեւելեան ուղղութեամբ։

Մասնաւոր բարձրութիւնն՝ որուն ընդհանրապէս յարմարցուած է անունը, ծովեզրին վրայ ժայռոտ հրուանդան մ'է իբր 1500 ոտք բարձր։ Կը բաղկանայ գայլախազով ծածկուած կարծր կրաքարէ։ Տակաւին կը միայ նոյն գեղեցկութեամբ՝ որով Կարմեղոս պարտէզներու եւ այգիներու երկիր մը հռչակուած էր վաղեմի ժամանակաց մէջ։ Իւր կողերն ու գագաթ սքօղեալ են դալարներով և զարդարեալ՝ պէս պէս ծաղիկներով,

այնպէս զի «Կարմեղոսի վսեմութիւնն» առակը տակաւին կրնայ գործածուիլ. Ես. ԼԵ 2։ Բլրոյն հիւսիսային արեւելեան զառիվայրին վրայ մենաստան մը կը կենայ որոյ մերձ ըլլալ կը թուի Բաաղի մարգարէից ընդդիմութեան տեղն՝ իւր պատարագը այրելու համար երկինքէն կրակ կոչած տեղն. Գ. Թագ. ԺԸ։ Մի քանի այրեր գտնուած են Կարմեղոսի մէջ՝ որոնք, անտարակոյս, Եղիայի և Եղիսէի հանապազօրեայ ժողովատեղիններն էին. Գ. Թագ. ԺԸ 42. Դ. Թագ. Բ 25։ Սուրբ Գրոց բանաստեղծական գրուածոց մէջ յաճախակի ակնարկութիւններ եղած են Կարմեղոսի նկատմամբ. Երգ. Է 5. Ես. ԼԵ 2։

Կարմեղոս փոքրիկ գիւղ մ'էր Յուդայի հարաւային կողմը, երբոր Նոբաղ կ'ասրահատէր իւր ոչխարներն, յորժամ իրեն եկան Դաւթի պատգամաւորներն։

4. Թափոր՝ կղզիացեալ լեռ մ'է Յեզրայելի դաշտին ծայրագոյն արեւելքի մէջ, ծովուն մակերեսէն իբր 1500 ոտք բարձր։

Իւր կազմութիւնը գրեթէ բոլորովին կլորային է, և ստորոտէն մինչև գագաթը ծածկուած է խոտերով, ծաղիկներով և թուփերով։ Ծայրը կը կենայ մեծամեծ պատնէշներու փլատակներով գոցուած լեռնադաշտ մը։ Թափորի վրայ կազմեց Բարակ իւր 10,000 մարդ-է բաղկացեալ բանակն որ

*նախ ելլա Սիսարայի և անոր բանակին դիմադրելու. Դատ. Դ 6. և, ըստ հին բայց սխալ աւանդութեան մը, այս լեռան վրայ այլակերպեցաւ Փրկիչն մեր Յիսուս. Ղուկ. Թ 28. Դրացի Քրիստոնեայք դեռ ծեսեր կը կատարեն ի յիշատակ այն դէպքին. Զարդիս կը կոչուի Ճէպէլ Թօ–ըր.*

5. Կիլպօա՝ *տորին բլրաշղթայ մ'է Ասդրաալոն (Յեզրայէլ) մեծ դաշտին հարաւային կողմը, չքեղապէս բարձրանալով դաշտէն աւելի քան* 800 *ոտք.*

*Յառաջագոյն առատ արօտ արտադրեց, բայց հիմա բոլորովին անբերրի է. Այս լեռներուն վրայ տեղի ունեցաւ Իսրայելացւոց և Փղշտացւոց միջեւ եղած պատերազմն՝ յորում կենակորուստ եղան Սաւուղ և իր որդիքը. Ա Թագ. ԼԱ.*

6. Եբաղ և Գարիզին՝ *Եփրեմի ցեղին հարաւային կողմը հաստատուած կղզիացեալ բլուրներ են.*

*Անոնք իրարմէ անջատեալ են նեղ հովիտով մը, հազիւ մէկ ասպարէզ ընդարձակութեամբ՝ որոյ մէջ կը կենայ Նաբղուսի քաղաքը, վաղեմի Սիւքէմը կամ Սիւքարը, և* 800 *ոտք բարձր են. Եբաղ կը բարձրանայ հովտին հիւսիսային կողմը, իսկ Գարիզին՝ հարաւային կողմը, և երկուքին ևս ժայռուտ են և անպտուղ. Յորդանանէ անցնելէն վերջ Յեսու խորան մը կառոյց Եբաղին վրայ ուր*

*գրեց օրէնքը . Ելս. Ը. 30: Այն ատեն բլուրներու մէջ եղող հովտին վրայ կեցած բարձրաձայն կարդաց օրէնքը ժողովրդեան առջեւ — անոնց՝ որ Եբաղի վրայ կանգնած կը փոխարինէին անէծքներուն և անոնց՝ որ Գարիզինի վրայէն կ՚արտաբերէին օրհնութիւններն . Օր. ԻԷ 12, 13. Ելս. Ը 33: Գարիզինի գագաթէն Յովաթամ արտասանեց իւր առակն Սիւքէմի մարդոց, երբոր նոքա թագաւոր ըրին զԱբիմէլէք. Դատ. Թ 7: Հոս ալ տաճար մը կանգնեցին Սամարացիք, Երուսաղէմայ տաճարին հետ մրցելու համար, որոյ վասն բընակիչք տակաւին սուրբ կը պահեն այս լեռն:*

7. Ձիթենեաց լեռը *հաստատուած է Երուսաղէմի արեւելեան կողմը: Ունի քառեակ կատարներ՝ որոց բարձրագոյնը* 2400 *ոտք վեր է ծովուն մակերեւոյթէն:*

*Ամենէն բարձր գագաթը կ՚ելնէ Գեթսեմանի պարտէզէն՝ ուր, ըստ հին աւանդութեան մը, տեղի ունեցաւ Քրիստոսի համբարձումն: Նուիրական մանրակրկիտ պատմութիւններ զայս դէպք կ՚արձանագրեն ի Բեթանիա կամ անոր մօտ տեղ մը պատահած. Ղուկ. ԻԴ 50: Կ՚ըսուի թէ այս բարձրացման կէս ճամբան էր ուր մեր Տէրը նստաւ և լացաւ Երուսաղէմի վրայ. Ղուկ. ԺԹ 4: Դաւիթ՝ Աբիսողոմէ փախած ատեն Ձիթենեաց լեռը ելաւ «և կուլար». Բ Թագ. ԺԵ 30: Իւր բարձանց*

ստորին և հեռաւորագոյն հարաւակողմն էր այն վայր՝ ուր Սողոմոն կառոյց Քամովսի բարձր տեղը Գ. Թագ. ԺԱ 7, ևն։ Հաւանաբար, այդ պատճառաւ կը կոչուի Ապականութեան լեռ. Դ. Թագ. ԻԳ 13։ Անոր հետ կապակցեալ Քրիստոսի կենաց դէպքերն բազմաթիւ են, և ի հռչակումն սորա շատ եկեղեցիներ և այլ յիշատակարաններ հաստատուած էին անոր տարբեր մասանց մէջ՝ յորոց ոմանք դեռ գոյութիւն ունին։ Քրիստոսի համբարձման եկեղեցին, ինչպէս նաև ուրիշներ, ամեն տարի հազարաւոր այցելուներ կ'ունենան։

8. Գօրանթանա կարի իմն ամայի բլրաշղթայի մը բարձրագոյնն է Երիքովի մօտ։

Կ'ենթադրուի թէ Քրիստոսի քառասնօրեայ ծոմապահութեան հետևորդ փորձանաց վայրն է այն. Մատթ. Դ 1։

9, Հերմոն Անդի-Լիբանան շղթային վերջաւորութիւնն կը կազմէ ի հարաւոյ։ Պաղեստինու մէջ ամենէն բարձր լեռն է սա՝ ու ծովուն մակերևսէն 11,000 ոտք վեր կը բարձրանայ, և մշտնջենական ձիւնով ծածկուած գագաթ մ'ունի։

Քանանու հիւսիսարևելեան սահմանն կը նկատուէր այն, Օր. Թ 8, և ոչ թէ Թաբոր լեռան մերձակայ փոքր բլրակի մը հետ խառնուած՝ որոյ տրուած է նոյն անունը։ Ամորհացիք կը կոչէին զայն Սէնիր, և Սիթոնացիք՝ Սարիոն, որով անգամ

մը յիշուած է ի Սբ. Գիրս, Սաղմ. ԻԹ 6, Մով-
սէս անոր կ՚ընծայէ Նաեւ Սէնի անունը. Օր. Դ 48։
Հաւանական է թէ սոքա Հերմոնի շուրջը գտնուող
փոքրիկ բլուրներու անուններն են, և ըստ դիպաց
կը ներկայանան փոխանակ ամբողջ շղթային։ Հեր-
մոն կցեալ է Թափօրի հետ. որպէս կը ներկայա-
ցնեն Պաղեստինու բոլոր լեռներն. Սաղմ. ՁԹ 12.
և Նշանաւոր հանդիսացած է իւր կազդուրիչ ցօ-
ղերուն համար. Սաղմ. ՃԼԳ 3։ Իւր արդի անունն
է Ծէղէւ-էւ-չէյ+։

10. **Բասան՝** (պորշոյէ) բլուրներու շարք մ՚է,
կամ, աւելի պատշաճ բառերով, Հերմոնի հիւ-
սիսային կողմէն մինչեւ Յաբբոկ գետոյն հարաւային
կողմը տարածուող բլրային երկրի մը որոշ մասն է։

Նշանաւոր է իւր առատ արօտին և անդ սնուց-
եալ խաշանց տեսակին համար. Օր. ԼԲ 14, և
Ռուբէնի և Գադի որդիքն և Մանասէի կիսացեղն
ընտրած էին զայն իբրեւ ժառանգութիւն ընդ
Դաղայոդ. Թու. ԼԲ 33։ Բազմիցս ակնարկուած է
Սբ. Գրոց բանաստեղծական մասանց մէջ. Սաղմ.
ԿԸ 15. ՃԼԶ 20։

11. **Գաղայոդ՝** արդարեւ բարձրաբերձ բլուր-
ներու փոքր գօտի մ՚է Յաբոկ գետէն սակաւ ինչ
հեռի ի հարաւ։

Իւր անուն կ՚առնու քարերու շեղջակոյտէ մը
զոր Յակոբ դրաւ երբոր Լաբանի հետ դաշնակ-

ցութիւն մը կնքեց Գաղաադ անուամբ. Ծննդ. ԼԱ 47. Ուստի Գաղայոդ կը ներկայացնէ ընդարձակ մաս մը երբեմն հիւսիսէն պարփակելով զԲասան՝ որ աւերակ եղաւ իր արդասաւորութեան և գեղեցիկ տեսարանին համար։ Գաղայոդի լերանց շատերը ծածկուած էին ծառերով որոցմէ կը հայթայթուէր Սուրբ Գրոց մէջ յիշուած նշանաւոր խէժն Գաղաադի Բալասան անուամբ. Երեմ. ԽԶ 11։ Գաղաադու շղթայի այժմու անունն է Ճէլաադ։

12։ Աբարիմ բարձր ու խորդուբորդ լերանց շարք մ'է որ կ'երկննայ Մեռեալ ծովուն երկայնութեամբ։

Անոնք շատ անբերրի են։ Շղթային երկու գագաթներն են Փօկր, Փիսգա կամ Նեբօ, որոց վրայ Բաղաամ կառոյց իւր խորաններն ու զոհ մատոյց իբրեւ նախապատրաստութիւն ընդդէմ Իսրայէլի արտասանելիք անիծից. Թու. ԻԳ 14, 28։ Վերջինէն ամբողջ Քանանը գիտելու թոյլատրեալ էր Մովսէս յառաջ քան իւր մահն. Օր. ԼԲ 49։ Շղթային արդի անունն է Էլ-Պելքա, Նեբով նկատմամբ Ջեբէլ Աթթարուս կը կոչուի։

### ՓՈՔՐ ԲԼՈՒՐՆԵՐ

Սելմոն լեռը, Եբաղի և Գարիզինի մօտ, Սբ. Գրոց մէջ յիշուած է Աբիմելէքի պատմութեան

կապակցութեամբ (Դատ. Թ 48), և նշանաւոր է իւր ձեան սպիտակութեան համար. Սաղմ. ԿԸ 14։

Նոյն մերձաւորութիւնն ունի Գաաս Բլուրն ուր թաղուած է Յեսու. Յես. ԻԴ 30։

Բենիամինի ցեղին մէջ է Ռեմմոն Վէմը ուր 600 Բենիամինեանք ապաստանեցան Իսրայէլի մնացորդաց հալածանքէն. Դատ. Ի 47։

Սէիոն, Մօրէայ և Ակրոն կը գտնուէին Երուսաղէմայ պարիսպներուն մէջ։ Սոցա առաջինը դրաւուեցաւ մինչնաբերդէ մը զոր Դաւիթ առաւ Յեբուսացիներէն և դրաւեց զայն իբրև իւր սեփհական բնակարանն. ուստի ստացաւ Դաւթի Քաղաք անունը. Բ Թագ. Ե 7։

Սիօն լեռը բազմիցս գործածուած է ի Սբ. Գիրս փոխանակ ամբողջ Երուսաղէմայ. Սաղմ. ՃԼԷ 1. Միք. Դ 8, և երբեմն ևս մարգարէութեանց մէջ՝ փոխանակ Հրէից ազգին. Ես. ԺԱ 16։ Աբրահամ Մօրէայի բլուրն եղաւ զԻսահակ իւր որդին, զոհելու նպատակաւ. Ծնն. ԻԲ 2, և որոյ վրայ յետոյ կառուցուեցաւ Սողոմոնեան տաճարը. Բ Մնաց. Գ 1։

Յուդայի հարաւային արեւելեան կողմը Մեռեալ Ծովուն մօտ է Ենգադի Բլուրն՝ ուր ժամանակ մը Դաւիթ ապաստանեցաւ Սաւուղի կատաղութենէն. Ա Թագ. ԻԳ 19։

Եփրեմի, Նափթաղիմի և Յուդայի անուններն, ինչ-

պէս և ուրիշներ, չերևիր թէ մասնաւոր բլուրնե-րու կը պատկանին. Յես. Ի 7, այլ թէ ա՛յն աղ-դաց սահմանակից կը թուին՝ ուր երկրին երեսը ընդհանրապէս բլրային է. Յես. ԺԷ 15։

## Ե. — ԴԱՇՏԵՐ ԵՒ ՀՈՎԻՏՆԵՐ

1. Յորդանանու Դաշտ
2. Յեզրայէլի կամ Ասդրա-ալոնի Դաշտ
3. Սարոն
4. Մօրէի Դաշտ
5. Յովսափաթի կամ Սա-վայի Հովիտ
6. Ենովմի Հովիտ
7. Ռափամի Հովիտ
8. Էլայի Հովիտ
9. Մամբրէի Դաշտ
10. Աղի Հովիտ
11. Յուդայի անապատը՝ որ կը պարփակէ Մաօնի, Զիփի, Էնգադդիի եւ Թէկովայի անապատներն

**1. Յորդանանու Դաշտը** կը տարածուի հա-մանուն գետոյն ընթացքին երկայնութեամբն Գեն-նեսարէթ լճէն մինչեւ Մեռեալ Ծովը։ Ունի իբր 70 մղոն երկայնութիւն, 5–12 մղոն տարածութիւն և ամենէն նեղն է ի հիւսիսային աստիճան։

Կրկնակ հովիտներէ կը բաղկանայ՝ որոց ներ-քինը, գետէն ոռոգեալ, բեղմնաւոր է և առատ՝ կանաչութեամբ. մինչ արտաքինը աւազուտ է և անմիրգ։ Տակաւ առ տակաւ Մեռեալ Ծովուն մօ-տենալով մեծապէս կ՚ընդարձակի և արեւելեան կողմը կը կազմէ Երիքովի դաշտն, և արեւմտեան կողմը՝ Մովաբու դաշտերն։ Յորդանանու դաշտին

տոլին բաժինն էր այն՝ (որոյ մէկ մասը թաղուած է Մեռեալ ծովուն մէջ) զոր Ղովտ ընտրեց երբոր բաժնուեցաւ Աբրահամէ. Ծննդ. ԺԳ 10. Յովհաննէս Մկրտիչ յաճախ կ'այցելէր Յորդանանու Հովիտն իւր ժողովրդային ծառայութեան միջոցին. Մատթ. Գ 5. Երիքովի դաշտը ծածկուած էր յոյժ հարուստ և արգասաբեր հողով մը, սակայն հիմա բոլորովին անմշակ եղած է. Հոս բանակեցան Իսրայելացիք Յորդանանէ անցնելէն վերջ և Երիքովի կործանումէն առաջ. Յես. Դ 13. Նոքա Մովաբու դաշտերուն մէջ բանակած էին երբոր Մովսէս Նաբաւ լեռն ելաւ ի մեռանել. Օր. ԼԴ 1. Յորդանանու դաշտը հիմա կը կոչուի Էլ-Կոր.

2. Յեզրայէլի Դաշտը՝ որ Սբ. Գրոց մէջ յիշուած է Մակեդդովի Հովիտ և կը կրէ նաև Յունական Աստրալոն անունը, ընդարձակ հովիտ մ'է Թափորէն մինչև Կարմեղոս, և Մր. Սթէփէնս հաշուած է 15 քառակուսի մղոն.

Սա Քիսոն գետէն ոռոգուելով յանչափս հարուստ հող մը կ'ստանայ. Թերեւս աշխարհի մէջ չկայ երկիր մը որ այնքան կռիւներու և արիւնհեղութեան վայր եղած լինի որքան այս Յեզրայելի դաշտը. Հոս, Թափորի ստորոտը, Թեփորա և Բարակ ի ճակատամարտ հրաւիրեցին Սիսարայի բանակն. Դատ. Դ 14. Գեդէոն և իւր 300 մարդիք հրաշալէս հոս նուաճեցին Մադիա-

*նացւոց և Ամաղեկացւոց բանակներն. Դատ. Զ 33։ Հոս մղեց Սաւուղ իւր վերջին պատերազմն. Ա Թագ. ԻԹ 1։ Հոս տեղի ունեցաւ Յուդայի Յովսիային տարաժամ մահն մինչ կը կռուէր Եգիպտոսի Նիքով տիրապետին հետ. Բ Մնաց. ԼԵ 22։ Այս բլրոյն վրայ Հռովմայեցիք երկիցս նուաճեցին զՀրեայս։*

3. **Սարօնի Դաշտն** *կամ* **Հովիտ** *երկրի արգասաւոր սահման մ'է՝ որ ծովեզերքն ի վեր կ'երկննայ Յոպպէէն դէպ ի Կեսարիոյ հիւսիսային կողմը։*

*Իւր անունը կ'առնու Եփրեմի մէկ քաղքէն՝ Լասարօնէն. Յես. ԺԲ 18։ Սոյն հովիտ Ս. Գրոց մէջ կարեւորութիւն ստացած է իւր դալարագեղութեան համար. Ա Մնաց. ԻԷ 29։ Սողոմոն «Սարօնի վարդը» կը գործածէ ի նշան գեղեցկութեան. Երգ. Բ 1։*

4. **Մօրէի Դաշտը** *ամենէն գեղեցիկ ու պտղաբեր երկրաց մին է ի Պաղեստին, Եբաղի և Գարիզինի միջեւ։*

*Ճոխաբար կ'ոռոգուի աղբիւրներէ և առուակներէ, և լի է նուշի, կիտրոնի և ձիթապտղոյ ծառոց պուրակներովն։ Սուսամի քաղքէն սակաւ ինչ ի հարաւ կը գտնուի Յակոբայ ջրհորն՝ ուր նստաւ Քրիստոս Սամարացի կնոջ հանդիպած ատեն. Յովհ. Դ 6, և ասկէ ոչ մի հեռի կը կենայ Յովսէփի տապանն. Յես. ԻԴ 32։ Հարաւէն*

*այս հովիտը կը տարածուի փոքր դաշտի մը մէջ որ մէկ մասն ըլլալ կը թուի այն դետնին՝ զոր Յակոբ գնեց Սիւքէմի հօր, Եմովրի որդւոցմէ. Ծննդ. ԼԳ 19: Իւր արդի անունն է* Նաբլուի Հովիտ:

5. Յովսաբաթի Հովիտը *նեղ ձորձոր մ'է Երուսաղէմի արեւելեան կողմը: Երբեմն կը կոչուի* Քէդրոնի Ձոր *համանուն վտակին իւր մէջէն հոսելուն համար:*

*Այս հովիտ նոյն ըլլալ կը կարծուի* Սահանի Հովտին *հետ՝ ուր Սոդոմի տէրապետը դիմաւորեց զԱբրահամ. Ծննդ. ԺԴ 17: Վաղեմի ժամանակաց մէջ Երուսաղէմի բնակչաց գերեզմանն էր այն, և, տակաւին, աշխարհի ամեն կողմերէն Հրեայներ յաճախելով կը բաղձան իրենց փոշին թողուլ իրենց հարցը փոշւոյն քով: Հովտին երեք ներգործիչ առարկաներն են Զաքիայ, Աբիսողոմայ և Յովսաբաթի տապանները:*

6. Ենովմի՝ *կամ աւելի ճշդիւ, Ենովմի որդւոյն հովիտը (Յես. ԺԵ 8), նեղ ու ապառաժուտ կիրճ մ'է Երուսաղէմայ հարաւային կողմին վրայ. Յովսափաթի հովտին աջ անկեանց մէջ:*

*Հովտին արեւելեան ծայրին մօտ կը գտնուի* Թոփհէթ *կոչուած վայրն՝ ուրկէ Հրէայք կը դիւտէին Բաաղի և Մողոքի ծէսերն (Դ Թագ. ԻԳ 10) և իրենց զաւակունք կրակին մէջէն կ'անցունէին իբր*

*զոհ. Երեմ. Է 31։ Հաւանորէն այս վերջին պարագայէն տրուած է այժմու անունն (Գեհեն) ի Հրէից՝ որ և գործածուած է ի ցոյց տանջանաց տեղւոյն։ Հովտին հարաւային կողմը՝ որոյ մօտ կը միանայ Ցովսաբաթի հովտին հետ, կայ Բրուտին Արտը որ գնուած է 30 կտոր արծաթի. Մատթ. Իէ 7։*

7\. **Ռափայմի Հովիտը** *կը տարածուի Երուսաղէմէ իբր 5 մղոն դէպ ի հարաւային արեւմուտք, մերձաւորապէս 2 1/2 մղոն դէպ ի Բեթղեհէմ։*

*Անունը, հաւանաբար, կ՚ելնէ նախկին բնակչաց հզօր հասակէն — Ռափայ կը նշանակէ հսկայներ. Յես. ԺԵ 8։ Անոր մէջ տեղ մը նշանակուած կայ իբր գերեզման Ռաքէլի. Ծննդ. ԼԵ 19, և վայրն է Դաւթի ընդ Փղշտացիս հանդիպած շատ մը դէպքերուն. Բ Թագ. Ե 22. Ա Մնաց. ԺԱ 15. ԺԴ 9։*

8\. **Էլայի Հովիտը** *հաստատուած է իբր 10 մղոն դէպ արեւմուտք Երուսաղէմի։*

*Արգասաւոր և հաճելի է. բայց գլխաւորաբար շահաւէտ է իբրեւ վայր Դաւթի և Գողիաթի միջեւ պատահած դիպուածոյն. Ա Թագ. ԺԷ 2. ԻԱ 9։*

9\. **Մամբրէի Դաշտը** *արգասաւոր դաշտ մ՚է Քեբրոնի հարաւային կողմը, և այնպէս կոչուած է Մամբրէ՝ որ իւր՝ արշաւանաց ատեն դաշնակցութիւն կ՚ընէր Աբրահամի հետ ընդդէմ Քոդողագոմորի բանակին. Ծննդ. ԺԴ 13։*

*Սա կը պարփակէր Մովաբայ դաշտն ու այն՝ զորս գնեց Աբրահամ իբրեւ գերեզմանավայր մը․ Ծննդ. ԻԵ 9։ Այս մերձաւորութեան մէջ է նաեւ Եսքողի Հովիտն՝ ուրկէ Հրէայ լրտեսներն կտրեցին խաղողի ողկոյզն Մովսէսի համար, սակայն ցարդ անծանօթ կը մնայ․ Թու. ԺԳ 24։*

10. Աղի Ջուրը *Մեռեալ ծովէն սկսեալ կը տարածուի դէպ ի Կարմիր ծովուն արեւելեան բազուկը․*

*Կ'ըսուի թէ, Սոդոմայ կործանումէն և Մեռեալ ծովու կազմութենէն առաջ, Յորդանանու մէկ մասն կը կազմէր։ Այս էր Եթովմացւոց վրայ տարուած կրկնակ յաղթութեանց վայրն. Բ Թագ. Ը 13. Դ Թագ. ԺԴ 7։*

11. Յուդայի Ա.Ճապատը *նահանգ մ'է՝ որ կը տարածուի Բեթրոնէ յարեւելս Մեռեալ ծովու, և հիւսիսէն հարաւ կը յառաջանայ նոյն ծովուն եզերքին երկայնութեամբ։*

*Թէպէտեւ անապատ կոչուած սակայն պէտք է հասկնալ սոսկ մշակութենէ զուրկ, զի, թողլով իւր ինքնաբեր արտադրութիւններն, կը գործածուի իբր արօտատեղի։ Բազմաթիւ քաղաքներ և գիւղեր հաստատուած էին անոր մէջ (Յես. ԺԵ 6), և այն նահանգն էր ուր Յովհաննէս Մկրտիչ սկսաւ իւր ժողովրդային ծառայութիւն․ Մատթ. Գ 1։ Անապատին հիւսիսային մասը երբեմն կը կոչուէր*

Թէկուէի Անապատ: Յովաբ այս տեղէն բերաւ կիներն Աբիսողոմը կանչելու թոյլտուութեան համոզելու համար զԴաւիթ. Բ Թագ. ԺԴ 2: Արեւմտեան կողմը կար Զիփի անապատն՝ ուր ապաստան գտաւ Դաւիթ Սաւուղի վրէժխնդրութենէն խոյս տալու ատեն. Ա. Թագ. ԻԳ 14: Արեւելեան կողմը կը գտնուէր Ենգադդի անապատն, Մեռեալ ծովուն ափանց վրայ: Այս եւս պատճառ եղաւ Դաւթի ապաստանութեան այրերէն միոյն մէջ՝ որով յոյժ առատ են մերձակայ լերինք, և որոց մէջ կտրեց Սաւուղի վերարկուին ծայրը մինչ կը քնանար. Ա Թագ. ԻԴ 1-4: Նահանգին հարաւային բաժինն էր Մաոնի անապատը: Հոս եւս Դաւիթ, ժամանակ մը, ապաստան փնտռեց Սաւուղի կատաղութենէն. Ա Թագ. ԻԳ 24: Նաբաղ՝ մերժելով մարդասիրութիւնն առ Դաւիթ և անոր մարդիքը, բնակեցաւ քաղքի մը մէջ՝ որոյ ընծայեց Նահանգին անունը. Ա Թագ. ԻԵ 2: Այս Նահանգաց իւրաքանչիւրն իւր անունն կ'առնու մերձակայ մի քանի քաղաքներէ կամ գիւղերէ՝ յորոց Թէկուէի, Մաոնի և Զիփի աւերակներն դեռ կը մնան:

## ՓՈՔՐ ՀՈՎԻՏՆԵՐ

Աքովրի Հովիտ. Բենիամինի արեւելեան կողմը, Գաղգաղայի մօտ՝ ուր քարկոծուեցաւ Աքար իւր

*գողութեան համար յերկքով. Յես. Է 24 ։ Այեղոնէ և Գաբաոնէ Հովէտներն, Դանի ցեղին մէջ. Երուսաղէմի հիւսիսային արեւմտեան կողմը՝ որոց վրայ կեցան Արեւն ու Լուսին մինչեւ Յեսուայ հրամանն. Յես. Ժ 12 ։ Սեփովնայէ Հովէտը. Յուդայի արեւմըտեան կողմը, Մարէսայի քաղքին մօտ՝ ուր Ասա յաղթանակ տարաւ Եթովպացւոց ի վերայ. Բ Մնաց. ԺԴ 9, 10 ։*

*Մեռեալ ծովուն մակերեսը ի սկզբան կը կոչուէր Սէդդէմ Հովէտը. Ծննդ. ԺԴ 3 ։ Յոյժ արգասաւոր էր Ղովտի բնակարան եղած ատեն. Ծննդ. ԺԳ 10. բայց իւր բնակչաց տկարութեան պատճառաւ խառնուեցաւ Սոդոմի աւերակաց մէջ և եղաւ Աղի ծովուն յատակը. Ծննդ. ԺԹ 25 ։*

## Զ. — ԳԵՏԵՐ

### 1. *Յորդանան*

*Միջերկրական ծովը թափող*

2. *Քիսոն* ։ 3. *Կանա* ։ 4. *Բոսոր Հեղեղատը*

*Ծիւղ Յորդանանու եւ Միջերկրական ծովու յարեւմուտս*

5. *Քերիթի Հեղեղատը* ։ 6. *Քիդրոն կամ Կեդրոն Հեղ.*

*Ծիւղ Յորդանանու եւ Մեռեալ ծովու յարեւելս*

7. *Յաբբոկ* ։ 8. *Առնոն* ։

1. Յորդանան՝ Լիբանանէ կ'ելնէ և դէպ հարաւ հոսելով Մեռոնի ջուրերն ու Գալիլիայի ծովը կը ճեղքէ և կը թափի Մեռեալ ծովը։ Իւր ակն է առատահոս աղբիւր մը Հասպիա (Hasbeiya) քաղաքին հիւսիսային արեւմտեան կողմը՝ որմէ զատ ունի երկու փոքր ակեր եւս — մին ի Պանիաս (Կեսարիա Փիլիպպէ), և միւսը ի Թէլ-էլ-Գադի, Դանի հին քաղաքին մօտ — որոնք իրենց հոսանքը միացունելով կը թափին Մեռոնի ջուրց ի մէջ։ Յորդանան իւր անուն կ'ընդունի այս լճէն ելնելուն համար, և իբր 9 մղոնի խոտորնակ հեռաւորութենէ վերջ կը մտնէ Գալիլիայի ծովը։ Կ'ընթանայ խորուն և ընդարձակ անջրպետի մէջէն և կը լեցուի Մեռեալ ծովուն մէջ. Գալիլիայի ծովէն շուրջ 70 մղոն դէպ հարաւ։

Թէև Յորդանանու հեռաւորութիւնը, ակէն մինչեւ Մեռեալ ծովու մուտքը, 100 մղոնէն աւելի չէ, սակայն գետոյն աւազանը այնքան ոլորուն է որ իւր ակը 180 մղոն վեր կը մնայ։ Յորդանանու միջին լայնութիւնը՝ իւր ական խոնարհագոյն մասանց մէջ 90 ոտք, և խորութիւնը իբր 9 ոտք կը հաշուուի։ Ունի կրկնակ եզերքներ, միջին և արտաքին։ Միջինք կը կազմեն իւր բուն աւազանը, իսկ արտաքինններուն կը հասնի ողողման ժամանակ։ Սոյն ափանց մէջ գտնուող անջրպետը, այս կամ այն կողմի վրայ ծածկուած է մացառով, և իբր

պատսպարան կը ծառայէ բազմաթիւ վայրի կենդանեաց. Երեմ. ԽԹ 19։ Յորդանանու Նոր Կտակարանի պատմութեան հետ ունեցած կապակցութեան գլխաւոր դէպքն է Իսրայէլացւոց անցքն ընդ այն որպէս ցամաքի՝ երբոր վերէն եկող ջուրը «կեցաւ շեղջակոյտի մը վրայ» մինչեւ որ ամբողջ ժողովուրդը ապահովապէս անցաւ. Յես. Գ 14–17։ Իւր ջուրերը յետոյ բաժնուեցան Եղիայի վերարկուին հարուածին տակ, մինչ Եղիսէի հետ անցան իւր յերկինս համբառնալէն առաջ. և դարձեալ՝ երբոր Եղիսէ առանձինն վերադարձաւ այն դէպքէն յետոյ. Դ Թագ. Բ 8, 14։ Նոր Կտակարանի մէջ յիշուած ուրիշ մէկ գլխաւոր դէպքն է Տեառն մերոյ Յիսուսի մկրտութիւնն ի Յովհաննէ Մկրտչէ (Մատթ. Գ 13), որ քիչ մը ատեն քարոզեց ու մկրտեց անոր եզերաց վրայ. Մատթ. Գ 6։ Վերոյիշեալ դէպքին բուն վայրը ըլլալ կը կարծուի Երիքովի հանդիպակաց մօտ, ուր հազարաւոր ուխտաւորներ կը յաճախէին ամեն տարի և եռանդագինս լուացուելէ վերջ անոր ջուրէն մաս մը կը տանէին իրենց անօթներով։

2։ **Քիսոն** Թափորի ստորոտէն ելնելով, կ՚անցնի Յեզրայէլի դաշտին մէջ, և Կարմեղոսի խարսխէն կը թափի Ակրոն ծոցը։

Անձրեւոտ եղանակաց մէջ, կամ, մերձակայ լերանց հալման ժամանակ, անանցանելի հեղեղով

մը կը յորդէ ։ Անտարակոյս այս ժամանակ էր երբոր Սիսարայի բանակը ցրուեցաւ անոր եզերաց վրայ, ինչպէս կ'երգէ Դեբորայ. «Կիսոն հեղեղատը քշեց տարաւ զանոնք». Դատ. Ե 21։ Կիսոնէ շատ Եղիսէ ջարդեց Բաաղի 400 մարգարէներն, Կարմեղոսի վրայ զոհ մատուցանելէն յետոյ. Գ Թագ. ԺԸ 40։

3. Կանան փոքր առուակ մ'է՝ որ Եփրեմի, լեռներէն ելլելով Միջերկրական ծովը կը թափի իբր 12 մղոն դէպ հարաւ Կեսարիոյ։

Սա կը կազմէ սահմանն ի մէջ Եփրեմի և Մանասէի ցեղերուն. Յես. ԺԶ 8. ԺԷ 9, 10։

4. Բոսոր Հեղեղատը Յուդայի լեռներէն կը հոսի Միջերկրական ծովն Կազայէ սակաւ ինչ ի հարաւ։

Դաւիթ Սիկելակը աւերող Ամաղեկացիներէն հալածուելու ատեն, հոս թողուց 200 մարդիկը՝ որոնք չէին կրնար անցնիլ գետէն. Ա Թագ. Լ 9, 10։ Հաւանաբար այս հեղեղատին մէջ էր՝ ուր Փիլիպպոս մկրտեց Եթովպացի ներքինին. Գործ. Ը 26, 36։

5. Քիրիդ Հեղեղատը արեւմուտքէն կը միանայ Յորդանանու Երիքովէ ոչ հեռի։

Այս էր Եղիսէի բնակավայրն նշանաւոր շրջանի մը համար, երբոր առաւօտ և երեկոյ կը կերակրուէր ագռաւներէն մինչ ի ցամաքելն հեղեղատին։ Գ Թագ. ԺԷ 3–7։

6. **Կեդրոն Հեղեղատը** կ'ելնէ Երուսաղէմէ իբր 2 մղոն դէպ հիւսիս և՝ հոսելով Յովսափաթի հովտին հարաւային մէջէն, կը դառնայ հարաւարեւմուտք և կը թափի Մեռեալ ծովը։ Ամառը թէև չոր կ'ըլլայ իւր աւազանը, և սակայն ձմեռը, և մանաւանդ, յորդ անձրեւներուն ատեն, մեծ առու մը կը հանդիսանայ։

Դաւիթ հոսէն անցաւ երբոր Աբիսողոմի առջեւէն խոյս կուտար Երուսաղէմէ. Բ Թագ. ԺԵ 23, 30։ Իւր ափանց քով Ասա իւր մօր, Մաաքային, շինած կուռքը այրեց. Բ Մնաց. ԺԷ 16։ Եզեկիա ասոր աւազանին մէջ նետեց տաճարին պղծութիւններն. Դ Թագ. ԻԳ 4, 6, 12։ Քրիստոս Գեթսեմանի պարտէզ գացած ատեն Կեդրոնէն անցաւ գիշերային երբոր քահանայապետին ձեռքը մատնուած էր. Յովհ. ԺԸ 1։

7. **Յաբբոկ** փոքրիկ գետ մ'է՝ որ կ'ելնէ Ռաբադ ամոնի (Rabbath ammon) մօտ Գաղաադ լեռներէն և կը թափի Յորդանանու հիւսիս արեւմտեան կողմը։ Իւր յատակը ժայռուտ է և հոսանքը՝ արագ։

Այս կը կազմէ հարաւէն Ամորհացւոց և հիւսիսէն Ամմոնացւոց երկիրներուն սահմանն. Թու. ԻԱ 24. Օր. Գ 16. և անմիջական մերձաւորութեամբ Յակոբ ըմբշեցաւ հրեշտակին հետ. Ծննդ. ԼԲ 22։

8. **Առնոն** կ'ելնէ Գաղաադ լեռներէն Յաբ-

*բոկի հարաւային մեծութեամբ, և կը թափի Մեռեալ ծովը ։*

*Այս գետն էր սահմանագիծն ի մէջ Ամորհացւոց և Մովաբացւոց. Թու. ԻԱ 13։ Ասոր մօտ Իսրայէլացիք՝ Մովսէսի ներքեւ, պարտեցին զՍեհոն, Ամորհացիները, և տիրեցին անոնց երկրին. Թու. ԻԱ 24։*

## ՓՈՔՐ ԱՌՈՒԱԿՆԵՐ

*Գաասայ առուակներն կը գտնուին Գաաս բլրոյն ստորոտն յԵփրեմ. Բ Թագ. ԻԳ 30։ Սորեկ հեղեղատը Յուդայի և Դանի մէջէն կը հոսի դէպ ի Միջերկրական ծով ։ Այս հովտին մէջ կը բնակէր Սամփսոնի կինն՝ Դալիլա. Դատ. ԺԶ 4 ։ Քիսոնի մօտ է Եսքողայ հեղեղատը՝ որոյ ափունքէն Մովսէսէ խրկուած լրտեսներն բերին խաղողի մեծ ողկոյզ մը. Թու. ԺԳ 24 ։ Եգիպտոսի գետը՝ որ ընդհանրապէս Նեղոս ցուցուած է, մի քանի անցիւք կը պատկանի առուի մը՝ որ Յուդայի լերանց հիւսիսէն կը հոսի դէպ ի Միջերկրական ծով և Պաղեստինու սահմանն կը կազմէ ի հարաւոյ. Թու. ԼԴ 5։*

## Է. ԼԻՃԵՐ

1. *Մեռոնի ջուրերը ։*

2. *Գալիլիայի ծովը՝ որ կը կոչուի նաեւ Տիբերիոյ ծով. Գեննեսարէթի լիճ, կամ Քենէրէթի ծով ։*

3. *Մեռեալ կամ Աղի ծով՝ որ եւ կը կոչուի Սոդոմի կամ Դաշտի* (Plain) *ծով։*

1. Մեռոնի ջուրերը՝ *Գալիլիայի հիւսիսային կողմը, կրնան նկատուիլ ջրշեղջ մը՝ յորում կը միանան Յորդանանը կազմող այլազան առուակաց ջուրերն։ Գարնան մէջ լիճը* $7\frac{1}{2}$ *մղոն երկայնութիւն և* $3\frac{1}{2}$ *մղոն լայնութիւն կ'ունենայ, իսկ Ամառը՝ սակաւ ինչ աւելի քան ճահիճն։*

*Մեռոնի ջուրերը Սբ. Գրոց մէջ նկատուած են այն տեղն ուր պատահեցաւ Յեսուայ և Հասորի Յաբինի զօրաց միջեւ եղած ճակատամարտն. Յես. ԺԱ. 5, 7։ Այժմու անունն է Պահր–էլ–Հուլէ։*

2. Գալիլիայի ծովն՝ *իբր 9 մղոն դէպ հարաւ, Յորդանանէ կազմեալ երկրորդ լիճն է։ Ունի 12 մղոն երկայնութիւն, և գրեթէ, 6 մղոն լայնութիւն իւր ընդարձակագոյն մասին մէջ։*

*Զայն կը պարփակեն ջուրին ծայրէն յանկարծակի 500–1000 ոտք բարձրութեան հասնող դահավէժ բլուրներ։ Այսպէս կը մնայ խոր խարսխի մը մէջ։ Իւր մակարդակը 300 ոտք վեր է Միջերկրական ծովու մակերեւէն։ Առատալի է զանազան ձուկերով՝ զորս, սակայն, դոյզն յարգ. ստացած են շրջակայ բնակիչներէն։ Հին ատենները իւր ափունքը զարդարուած էին բազում քաղաքներով և գիւղերով, և իւր ջուրերը ծածկուած էին հարիւրաւոր նաւերով, սակայն զարդիս՝ ի բաց առեալ սոյն*

քաղաքաց փլատակներն, ոչինչ կը գտնուի անդ, և հազիւ մէկ նաւ կրնայ գտնուիլ լճին վրայ։ Գալիլեայի ծովը Նոր Կտակարանին մէջ նշանաւոր է լոկ Քանանու սահմանաց կամ մերձաւոր ազգաց հետ ունեցած կապակցութեամբ Գենեզարեթի ծով անուան տակ. Թու. ԼԴ 11. Յես. ԺԲ 3։ Նոր Կտակարանին մէջ բազմիցս ակնարկութիւններ եղած են անոր նկատմամբ։ Մեր Փրկչին նախահետեւողք իրեն առաքեալներ ըլլալու կոչում ստացան սորա ափունքէն. Մատթ. Դ 18, 21։ Մէկէ աւելի դիպաց մէջ սաստկայոյզ փոթորիկներ հանդարտեցան անոր վրայ Իւր մէկ զօրեղ խօսքով. Մատթ. Ը 26. և անգամ մը քալեց անոր վրայէն իբրեւ ցամաք երկրի մը, Մատթ. ԺԴ 25։ Ջուկերու հրաշալի առատութիւն մը հանուեցաւ անկէ Իւր հրամանին հնազանդութեամբ. Ղուկ. Ե 4, 9. Յովհ. ԻԱ 6։ Յետ յարութեան այս լճին եզերքը երեւցաւ Իւր աշակերտաց. Յովհ. ԻԱ 1, 7։ Իւր արդի անունն է Պահր-էլ-Թապարիէ։

3. Մեռեալ ծովը Պաղեստինու լճերուն ամենէն մեծն է 40 մղոն երկայնութեամբ, 9 մղոնի միջին լայնութեամբ, և 2-200 գրկաչափ այլայլական խորութեամբ։ Սա կը կենայ Յուդայի ցեղին արեւմտեան երկայնութեամբ և կ՚անջատէ զայն Մովաբի և Ռուբէնի մասէն։

Իւր լցուցած աւազան երբեմն էր Սիդդիմի

ձորը, փոխանակ Սոդոմ Գոմորին. Ծննդ. ԺԴ. 3։ Ամեն կողմէ պարփակեալ է բարձրաբերձ, խորտուբորդ և անբերրի բլուրներով՝ յորոց ոմանք լճին մակերեսէն 2000 ոտք վեր կը բարձրանան՝ որ 1300 ոտք ցած է Միջերկրական ծովու մակերեւոյթէն։ Իւր տեսակարար ծանրութիւնն է 1.241, թարմ ջուրը 1 հաշուելով. և տարբաղադրութեամբ գտնուած է որ իւր ծանրութեան 1/4 ը աղ է։ Սոյն պարագայք թեթեւօրէն կը ներկայացունեն զայն, այնպէս որ դոյզն աշխատանք բաւական են մակերեսին տակ խորասուզելու։ Անոր մէջ ո՛չ ձուկ և ոչ ալ ուրիշ կենդանի գտնուած է, և ափանց վրայ ալ չկան բոյսեր ոչ մի տեսակի. այս պատճառաւ թերեւս, ընդունած է «Մեռեալ ծով» անուն՝ որով ծանօթ է առ հասարակ։ Ծովեզերքը բաւական ժամանակ մնացողներու մէջ պատահեալ քանի մը մահացու դէպքերով հաստատուած է որ մերձակայ մթնոլորտը բոլորովին ապականեալ է. զայս, սակայն, վերագրելի չէ բուն ծովուն արտաշնչութեանց, այլ ափանց վրայ գտնուող գարշահոտ աղբիւրներուն և ճախիններուն։ Մեռեալ ծովուն բոլորտիքը մեծ քանակութեամբ կարելի է ձեռք բերել բորակ, ծծումբ և կուպր. և մերձակայ ժայռից շատեր գրեթէ բոլորովին աղէ կազմուած են։ Իւր մակերեսը գտնուող գոլորշիք այնքան շատ են՝ որ, թէև Յորդանանու, Առնոնի և ուրիշ փոքր

գետակներու ջուրերը կ՚ընդունի, և, սակայն, զանոնք ամենքն ալ կը ծծէ։ Այս կինայ նկատուիլ (accounted for) մթնոլորտին չերմութեամբ որ արեւադարձէն աւելի է։ Նոր կտակարանին մէջ անգամ մ՚իսկ յիշուած չէ այս ծովը։ Հին կտակարանի հետ կապակցութիւն ունեցող գլխաւոր դէպքն է Սոդոմ Գոմորին կործանումն. Ծննդ. ԺԹ 24–29։ Հիմա մերթ կը կոչուի Եօֆալթեան ծով՝ իր մէջ գըտնուած կուպրին համար, և Արաբացիներէն՝ Պահր-էլ-Լութ կամ Ղովտի ծով։

## Ը. — ԱՒԱԶԱՆՆԵՐ ԵՒ ԱՂԲԻՒՐՆԵՐ

1. Յակոբայ Ջրհորն
2. Գեհոնի Աղբերակն
3. Սեղովամի Աւազանը
4. Բեթեսդայի Աւազանը
5. Սողոմոնի Աւազաններն

**1. Յակոբայ Ջրհորը** հաստատուած է Նաբղուսի հովտին մէջ Սիւքեմէ քանի մը մղոն հեռի։ Իր խորութիւնն է 75 ոտք, բայց հիմա չոր է։

Այս ջրհորին քով նստաւ Քրիստոս Սամարացի կնոջ հետ խօսած ատեն. Յովհ. Դ 6, 12։

**2. Գեհոնի Աղբերակը** կը գտնուէր Երուսաղէմայ արեւմտեան կողմին վրայ։

Հոս օծուեցաւ Սողոմոն. Գ Թագ. Ա 33, 38։ Գեհոնի ջուրերը Դաւթի քաղաքին մէջ կը տանէր Եզեկիա հաւանօրէն Սենեքերիմէ պաշարեալ ըլլալու ակնկալութեամբ. Բ Մնաց. ԼԲ 30։

3. Սելովամի Աւազանը կը կենայ Երուսաղէմի հարաւային կողմը։ Արհեստական ջրշեղջ մ'էր այն շուրջ 24 ոտք խորութեամբ։

Ջուրը կը բղխի աղբիւրէ մը՝ որ հիմա կը կոչուի Կոյսին (Virgin) աղբիւրը՝ Յովսափաթի հովտին մէջ, և Սելովամ կը տարուի ստորերկեայ խողովակով մը, Օփէլի բլրոյն տակէն։ Մեր Փրկիչը աչքերը կաւով օծած անձին հրաման ըրաւ երթալ լուացուիլ այս աւազանին մէջ, և նա «լուացուեցաւ և եկաւ ու կը տեսնէր»։ Յովհ. Թ 7։ Ջուրը թէև չունի մասնաւոր յատկութիւն մը, սակայն տակաւին մնապաշտութեամբ կը գործածուի այն կուրութեան դժբաղդ վիճակի համար։

4. Բեթեսդայի Աւազանը («Գթութեան տուն») մեծ ջրամբար մը կամ ջրշեղջ մ'է Երուսաղէմի արեւելեան կողմը. և մէկ կողմէն սահմանափակեալ է տաճարին արքու պատով։ Ունի 300 ոտք երկայնութիւն, 120 ոտք լայնութիւն և մօտաւորապէս 75 ոտք խորութիւն։

Սա շրջապատեալ է հինգ գաւիթներով՝ որոց երկուքին հնացորդները տակաւին կը մնան. Յովհ. Ե 2։ Սոցա միոյն մէջ Յիսուս գտաւ 38 տարուան հիւանդ մը և բժշկեց զայն. Յովհ. 48։

5. Սողոմոնի Աւազանները երեք մեծ աւազաններ են բլրոյ մը զառիթափին վրայ, Երուսաղէմէ իբր 7 մղոն ի հարաւ։ Նոքա միմեանց հեա

հաղորդակցութիւն ունին, այնպէս զի բարձրագունին Մնացորդ ջուրն կը հոսի երկրորդին մէջ և անտի ստորնագունին մէջ։

Թերեւս անոնք են Սողոմոնի ակնարկածներն իւր ըրած մեծամեծ գործոց և արտերը ոռոգելու համար շինած աւազաններուն վրայով խօսած ատեն. Ժող. Բ 4–6։ Սողոմոնի աւազաններէն մինչեւ բլրոյ կողմերը ջրմուղ մը կ'առաջնորդուէր՝ որով ջուրի նշանաւոր հոսանք մը կը տարուէր յԵրուսաղէմ։

## Թ. — ԿԼԻՄԱՆ, ՀՈՂՆ ՈՒ ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆՔ

Ընդհանրապէս խօսելով Պաղեստինու կլիման մեղմ և առողջարար է։ Անձրեւոտ եղանակները սովորաբար Հոկտեմբերի վերջերը կ'ըլլան, երբոր երկիրը հերկուած ու ցանուած է. և Ապրիլի վերջը՝ հունձքի սկսումէն առաջ։ Հրէայք կը ճանչնային զայնս իբրև «առաջին և վերջին անձրեւ», և մեծապէս կը գնահատէին իբր էական պէտք մը արմտեաց հասուննալուն։ Այս շրջաններու մէջ որոտումը շատ յաճախադէպ է անդ, թէև ձմեռատեն լսելի կ'ըլլայ միայն դաշտերու մէջ և ամառը՝ լեռներու վրայ։ Տարւոյն Մնացեալ եղանակաց մէջ դուն ուրեք անձրեւ կը տեղայ՝ որոյ պէտքն կը փոխարինուի առատ ցօղոյ կայլակներով, մանաւորաբար դաշտային երկրաց մէջ։ Ցօղոյ հանապազօրեայ յիշատակութիւնն՝ ի Սբ. Գիրս, ապացոյց

մ'է ցուցնելու թէ որքան կը գնահատուէր այն իբրեւ աղբիւր երկրին արգասաւորութեան . Ծննդ. ԻԷ 28 . Սաղմ. ՃԼԸ 3 :

Պաղեստինու հիւսիսային երկրաց լեռները գլխաւորապէս կը բաղկանան կրային ապառաժներէ . բաց-ճերմակ գունով և մեծապէս կարծր : Երուսաղէմի կամ անոր մերձակայ ապառաժներն ալ նոյն կազմութիւնն ունին : Բայց Մեռեալ ծովին երկնցող բլուրներուն ու խոնարհագոյն Յորդանանը որձաքար (granite) և այլ բաղադրութիւններ ունին : Պաղեստինու զանազան մասանց մէջ բլրոց վերին խաւերը բաղադրեալ են դիւրաթեկ կաւճային գոյացութեամբ մը՝ յորում գտնուած են ծածկեալ բուստեր , խեցիներ և ձուկեր , ինչպէս նաեւ քարացած պտուղներու նման գայլախազեր : Այս վերջինք գլխաւորապէս առատ են Կարմեղոսի մէջ : Մովսէս կը նկարագրէ քաղաքը իբրև «երկիր մը՝ որոյ քարերն երկաթ են , և որոյ դաշտերուն մէջ կարելի է պեղել արոյր (brass)». սակայն զարդիս եթէ կան մետաղներ Պաղեստինու մէջ , Լիբանանու հարաւային կողմը , բնակչաց անտարբերութիւնն ու նուաստութիւն թոյլ չեն տար իրենց որ և իցէ օգուտ քաղել անոնցմէ : Սրբազան գըրուածքներ կը հաստատեն թէ Հրէայք ծանօթացած էին այլազան թանկագին քարերով. և լերանց համբաւն առիթ կ'ուտայ հաւտալու թէ տպազիոն,

զմրուխտ, թիւրեղ և գեղեցիկ յասպիս կրնան առատ ըլլալ, բայց բնակիչք դոյզն խնամք կը տանին անոնցմէ օգտուելու մասին։

Սուրբ երկրին հողը՝ Հրէից ժառանգութեան ատեն, անտարակուսելի կերպով հարուստ էր,, և յիովին իրագործեց Մովսէսի շողշողուն նկարագրութիւնն անոր նկատմամբ. Օր. Ի 8, 9։ Ո՛չ միայն դաշտավայրեր և հովիտներ մշակութեան ենթարկուած էին, այլ և, դարատափներու և թամբաշինութեան համար, մինչև իսկ բլուրներն բերրի կը լինէին մինչ ի կատար իւրեանց։ Սոցա ապացոյցներ կը մնան դեռ հողը զառիվայրէն պահպանելու համար հաստատուած պատերու փլլատակաց մէջ։ Կան նաև ջրանցքի հետքեր որոց միջոցաւ ջուրը աւազաններէն արտերը կը տարուէր ոռոգման համար, այսպէս կը փոխանակուէր անձրևներու և գետաջրոց պակասութիւնն։ Այս կերպով ի յայտ կուգան հողին բնական ճոխութիւններն և մշակներ մեծապէս կը վարձատրուէին։

Պաղեստինու բուսական արտադրութիւնք յոյժ բազմաթիւ են և զանազան. ամենէն հասարակներն են ցորեն, հաճար, գարի, բակլայ և բամբակենի՝ որ ամենուրեք կը զարգանայ. մասնաւոր երկիրներ կ՚արտադրեն նաև ծխախոտ։ Բրինձը կ՚աճի Մեռոմի ջուրերուն եզերքը, սպիտակ թութն ու որթը առատ են Լիբանանու մէջ։ Սիւքէմ և

Եաֆա (Յոպպէ) կ՚արտադրեն նարինջ, կիտրոն, լէմոն և ձմերուկ. արմաւ և նուռ կը ծաղկին Գազայի մէջ. Լեռակը ինքնովին կ՚աճի Յորդանանու ափանց վրայ. քանի մը արմաւենիներ կը պըճնազարդեն Երիքովի մերձակայքը։ Թզենին կը մըշակուի մի քանի շրջանակներու մէջ, և իւր պտուղը կը գործածուի իբր արտածութեան նիւթ, բայց ձիթապտուղը երկրին ամենէն ճոխ արտադրութիւններէն մին ըլլալովն հանդերձ գրեթէ բոլորովին անտես առնուած է և կ՚աճի գլխաւորաբար վայրի տեղեր։

Կենդանեաց մէջ հասարակաց են մեր բուն ընտանեկանները։ Ոչխար, եզ և այծ կը կազմեն Եբրայեցւոց ստացուածքին մէկ մասը։ Անոնց ձիերը այնքան շատ չ՚են, բայց փոխանակ անոնց առհասարակ կը գործածուին ազնիւ տեսակի եզներ, ուղտեր և էշեր։ Սբ. Գրոց մէջ կը գտնեմք քանի մը վայրի անասնոց յիշատակութիւնն՝ (Օր. ԺԴ 4, 5) որոց ոմանք դեռ կը մնան, սակայն ինչ ինչ պատճառներով անկարելի է զանոնք նմանցունել այժմեան ծանօթներէն որ և իցէ միոյն։ Սաւուղի առջև Դաւիթ նկարագրեց առիւծի մը և արջի մը հետ իւր ունեցած պայքարն. Ա. Թագ. ԺԷ 34. որոց և ոչ մին կը բնակի ի Պաղեստին։ Ընձառիւծը տակաւին կ՚այցելէ Լիբանանու ամայութիւններն։ Բորենիք և չնագայլեր բազմաթիւ են Յորդանանու

եղերաց վրայ. արու խոզեր կը գտնուին Թափորի
և շրջակայից մէջ, և սաղարդիւք սնանող եղջե-
րուաց քանի մը տեսակներ՝ երկրին բարձանց վրայ։
Թռչնոց և սողնոց շատ տեսակներ կան ի Պաղես-
տին, որոնք փութանակի կարելի է նմանցունել
Սբ. Գրոց մէջ յիշուածներուն։ Մեղուներու առատ
բազմութիւն մը կը յաճախէ ժայռերու բացուածք-
ներուն. այնպէս զի փութաջանութեան և ուշադրու-
թեան չափաւոր բովանդակութեամբ մը Պաղեստին
կրնայ այժմ փոխարինել իւր հին նկարագրութեան.
— «Կաթով ու մեղրով առատ երկիր մը»։

## Ժ. ԲՆԱԿԻՉՔ

Պաղեստին ի սկզբան կը բնակէին Քամի որդ-
ւոյն Քանանէ սերեալ ազգաց բազմութիւններ.
Ծննդ. Ժ 15–19։ Սոքա երկրին վրայ բաժնուած
էին այսպէս. — Յորդանանու արեւելեան կողմը
ժառանգած էին Քանանացիք, Գեննեսացիք և Գատ-
մոնացիք։ Արեւմտեան կողմը՝ բլրային երկիրն ի
հարաւոյ, գրաւուած էր Քետացիներէն, Բերեզա-
ցիներէն, Յեբուսացիներէն և Ամորհացիներէն։
Կեդրոնական երկիրը՝ Քանանացիներէն։ Գալիլեայի
ծովուն արեւելեան երկիրը՝ Գերգեսացիներէն, և
հիւսիսային մասը՝ պարփակելով Լիբանանու ղա-
ւիվայրն, Խեւացիներէն։ Եղերքն ի վեր երկրի նեղ

ջերտի մը մէջ կը բնակէին Փիւնիկեցիք ու Փղշ-
տացիք՝ ի հարաւոյ ։

Այն 'ինչ Իսրայէլացիք Մովսէսի ներքեւ մտնե-
ցան Ուխտի Երկրին, Յորդանանու արեւմտեան
իշխանութիւնք հազիւ ո եւ է փոփոխում յանձն ա-
ռին, սակայն արեւելեան կողմը Ամորհացիք պա-
հանջեցին երկու իշխանութիւններ, Բասան և Գա-
ղաադ՝ որոնք Հերմոն լեռնէն կը հասնին մինչեւ
ի հարաւ Առնոն գետ, և երկիրը Առնոնի հարաւէն
առնուեցաւ Մովաբացիներէն ։

Ամորհացւոց երկու իշխանութիւններն էին ինչ
որ Իսրայէլացիք նուաճեցին յառաջ քան Յորդա-
նանէ անցքն . Ղովտի սերունդ եղող միւս դրացի
ազինք հաւանեցան թողուլ առանց դժուարու-
թեան ։ Յորդանանու արեւմտեան կողմին գրեթէ
բոլորովին տիրապետած և աւար առած էին Հրէ-
այք, և, մի քանի տարեաց պատահական ընդ-
միջումով, նոքա թողուցին անոր բոլոր տէրերն
մինչ ի գերութիւն Ասորեստանցւոց։ Յորժամ տեղի
ունեցաւ, Ասորեստան զանազան քաղաքներէն, խառն
բազմութիւն մը կազմուելով հաստատուեցաւ Պա-
ղեստինու կեդրոնական մասանց մէջ, և մի քանի
մնացորդ Հրէից հետ միանալով կազմեցին խառ-
նուրդ ցեղ մը Սամարացի անուամբ ։ Բաբելոնի
խառնակութենէն վերջ Յուդայի և Բենիամինի
ցեղերը վերադարձան իրենց սեփհական բնադա-

ւառն՝ զոր պահպանեցին առանց ընդմիջման մինչև անոր նուաճումն ի Հռոմէ ։

Հրէայք՝ իրենց վաղեմի պատմութեան համեմատ, երկրագործական և հովուական ժողովուրդ մ'էին ։ Սողոմոնի տիրապետութեան միջոցին վաճառականական պահանջներն լիուլի կը հոգացուէին․ ատաղձը Տիւրոսէն Յոպպէ կը տարուէր լաստերով․ ոսկին ու արծաթ Թարսիսէն և Ոփիրէն կը բերուէին, և սոցա փոխարէն ցորեն, գինի և իւղ կ'արտածուէին մեծ քանակութեամբ ։

Բազմապիսի պատճառներ միացան զՀրէայս ուրոյն և արտաքսիչ ժողովուրդ մ'ընելու ։ Պարագայք միացան իրենց արմատին հետ․ Եգիպտոսէ ազատումն և մուտքն ի Քանան․ իրենց մասնաւոր կրօնական ծիսարանը․ մասնաւորաբար նոցա Աստուծմէ սերեալ լինելուն խորհուրդը․ Մեսիան իրենցմէ սերուած ըլլալուն գիտակցութիւնը․ և իրենց հակամիտութիւնն մշտնջենապէս հեթանոսական սովորութեանց միացունկող դատաւորութիւններն, ամենքին կը նպաստեն իրենց անհատականութիւնն համեմելու ։ Սոյն ազդեցութեան արդիւնքը յանչափս զօրաւոր եղած է՝ որ ներկայիս մէջ իսկ թէև ամեն ազգի մէջ մուտ գտած է (Հրէականը խառնուած չէ ու և իցէ միոյն հետ), բայց տակաւին այնքան որոշ է որքան Քանանու անվիճելի տէրը ։

Պաղեստինու արդի բնակիչք կը հաշուուին 400,000՝ որոյ մեծագոյն մասը Արաբացի են և առ հասարակ գործածական լեզուն Արաբականն է։ Թուով նոցա յաջորդներն են Քրիստոնեայք, բազում աղանդներու բաժնուած, իրարու հետ ունեցած հակառակութեամբ ողբալի։ Հրէայք, բաղդատաբար, ընդհանրութեան մէկ փոքրիկ մասն կը կազմեն։ Ասոնցմէ շատերը Եւրոպացի գաղութներ են՝ որոց զաւակունք եկած են իրենց փոշին թողուլ հարցը փոշւոյն տեղ։

## ԺԱ. — ՊԱՏՄԱԿԱՆ

Քանանու բաժանումն՝ Իսրայէլի ազգաց միջեւ, տեղի ունեցաւ նախ քան զՔրիստոս 1440ին։ Սակայն բնակիչք բոլորովին անկար լինելով, և բազմիցս կռապաշտական արգիլեալ յարաբերութեանց հետեւելով Իսրայէլացիք գերութեան քանի մը յաջորդական տարիներու ենթակայ եղան դրացի ազգաց տակ իբր պատուհաս իրենց յանցանաց։ Նոքա այս ստրկութեան վիճակէն ազատեցան նոյն նպատակի համար ընտրեալ դատաւորաց միջոցաւ. որոնք գթութեամբ կը ծառայէին իրենց կենաց մնացեալ միջոցին, Աստուծոյ առաջնորդութեամբ ճշմարիտը գործադրելով։ Այս կառավարիչներէն մին էր Սամուէլ։ Սա՝ ժողովրդեան իսկ խնդրա-

նօք վիճակաւ տիրապետ ընտրեց զՍաւուղ՝ որ ի գահ բարձրացաւ 1095ին Ն. Ք.։ Իւր և իւր յաջորդներուն տիրապետութեանց միջոցին Դաւթի և Սողոմոնի ցեղերը միանալով ուրոյն տիրապետութիւն մը կազմեցին՝ որ իւր փառաց զենիթին հասաւ ընդ Սողոմոնաւ։ Իւր իշխանութենէն անջատուող 10 ցեղերու գլուխ ընտրուեցաւ՝ որդին Ռոբովամ։ Յուդայի և Բենիամինի ցեղերը հաւատարիմ մնացին Դաւթի գերդաստանին։ Այս ժամանակ Իսրայէլի և Յուդայի տիրապետութիւններն անջատեցան և զիրար յոգնեցուցին կայուն նախանձաւորութեամբ ու յաճախադէպ պատերազմներով։ Տարբեր հարստութեանց տկար ու կռապաշտ տիրապետաց հարստութիւն մը կառավարեց զԻսրայէլ մինչ 721 Ն. Ք. երբ Սաղմանասար գերի տարաւ 10 ցեղերն յԱսորեստան. բայց այս շրջանէն սկսեալ անծանօթ կը մնայ իւրեանց պատմութիւն։ Յուդայի տիրապետութիւնը հաւատարիմ մնաց Դաւթի ընտանիքին մինչեւ 588 Ն. Ք. երբոր ինք եւս նուաճուեցաւ զԵրուսաղէմ աւերող Բաբլացիներէն։ 70 տարւոյ գերութենէ ետք Հրէայք ի Յուդա վերադարձան Մեդօ-Պարսկաստանի Կիւրոս տիրապետին հեղինակութեան տակ, վերակազմեցին Երուսաղէմ և Պարսկաստանի հպատակ եղան մինչեւ 330 Ն. Ք. յորժամ Մեծն Աղեքսանդր տիրապետեց Պարսկաստանի։ Աղեքսանդրի մահէն վերջ իւր

իշխանութեան բաժանման առեն Պաղեստին ինկաւ Պտղոմէոսի և հաստատուեցաւ իւր յաջորդներուն ձեռամբ իբր մէկ դար։ Շուրջ 200 ին (Ն. Ք.) Սիւրիոյ Մեծն Անտիոքոս իւր տիրապետութեան միակցեց զայն. բայց նախ քան զՔրիստոս 143 ին վերստացաւ իւր առաջին դիրքը Մագապեանց տակ։ Հրէական կառավարութեան 100 տարիէ վերջ Հռովմայեցիք տարբեր կուսակցութեանց վէճերէն հրապուրեալ միջնորդեցին իրենց իշխանութիւնը և անոնցմէ Մեծն Հերովդէս դահը ելաւ Ն. Ք. 44 ին։ Իւր մահէն յետոյ Յուդայ բաժինն եղաւ անոր որդւոյն Արքեղայոսի, սակայն նորա աքսորէն վերջը հաստատուեցաւ այն Հռովմէական փոխանորդաց իշխանութեան տակ՝ որոց ամենէն նշանաւորն է Պոնտացի Պիղատոս առ որոյ իշխանութեամբ խաչազոհ եղաւ Փրկիչն մեր Յիսուս։ Հրէից հանդարտութենէն պատեհութիւն գտնելով Վեսպասեանք յամի Տեառն 67 ին երկիրը մտան բանակաւ մը և 70 ին (Յ. Ք.) իւր որդին Տիտոս, Երուսաղէմը քանդեց։ Յուդայ հաստատուեցաւ Հռովմայ ազդեցութեան տակ մինչև Է դարուն սկիզբները՝ երբ որ Սարակեանք նուաճեցին զայն և տիրապետեցին անոր։ Պաղեստին ԺԴ դարէն մինչեւ ցայսօր հպատակ է Օսմանեան հզօր պետութեան։

ՎԵՐՋ Ա. ՏՐՋԱՆԻ